## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։*

---

# ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ՆԱԽԱՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

Մոտենում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 33-րդ տարեդարձը։ Ծավալելով համամիութենական սոցիալիստական մրցությունը, մեր երկրի աշխատավորները պայքարում են այդ պանծալի տարեթիվը դիմավորել ժողովրդական տնտեսության զարգացման, գիտության և կուլտուրայի բնագավառում ձեռք բերած նորանոր նվաճումներով։ Օրավուր ավելանում է 1950 թվականի պլանները ժամկետից շուտ կատարած բրիգադաների, ստախանովական բանվորների թիվը։

Ներկայումս չկա և չի կարող լինել այնպիսի գործարան, ֆաբրիկա, շինարարություն, կոլտնտեսություն, որտեղ ծավալված չլինի սոցիալիստական մրցությունը։ Սոցիալիստական մրցությունը, ինչպես նշում է ընկեր Ստալինը, սոցիալիզմի կառուցման



կոմունիստական մեթոդն է։ Սովետական մարդիկ, հայրենասիրական բարձր զգացմունքներով լի, ոչ մի ջանք չեն խնայում մեր երկրի է՛լ ավելի հզորացման ու ամրապնդման, կոմունիզմի հոյակապ շենքի կառուցման համար։ Յուրաքանչյուր օր հայտնի են դառնում նորանոր առաջավոր բանվորների և բանվորուհիների, կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների անուններ, մարդիկ, որոնք նորարարական իրենց նախաձեռնություններով, իրենց անձնվեր աշխատանքով փառաբանում են մեր Հայրենիքը։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները լրացուցիչ պարտավորություններ են ստանձնել Հայաստանում սովետական կարգերի հաստատման 30-րդ տարեդարձը արժանավայել կերպով դիմավորելու համար։ Կասկածից դուրս է, որ այդ պարտավորությունները կկատարվեն ժամանակին և պատվով։ Դրա երաշխիքն է մեր մարդկանց սերը դեպի մայր Հայրենիքը, աշխատանքային այն խանդավառությունը, որ տիրում է մեր գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսային դաշտերում և նորակառույցներում, դրա երաշխիքն է օրավուր ծավալվող սոցիալիստական մրցությունը։



Մեր կյանքի բոլոր բնագավառներում ծավալված այդ եռում, ստեղծագործ աշխատանքում իրենց պատասխանատու և պատվավոր անելիքներն ունեն ագիտատորները։ Նրանք կոչված են աշխատավորների լայն խավերի սեփականությունը դարձնելու բոլշևիկների պարտիայի և սովետական կառավարության քաղաքականությունը, մեր երկրում կոմունիզմի կառուցման հոյակապ նախագծումները, կազմակերպելու և բորբոքելու սոցիալիստական մրցությունը, օգնելու նրանց՝ կատարելու վերցրած պարտավորությունները։

Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների ճնշող մեծամասնությունում ագիտատորները հաջող կերպով են կատարում իրենց այդ խնդիրները։ Դրանց թվին են պատկանում Երևանի էլեկտրամեքենաշինական, Ձերժինսկու անվան գործարանների, Լենինականի Տեքստիլ կոմբինատի, Գուլպա-տրիկոտաժի ֆաբրիկայի և այլ ձեռնարկությունների ագիտատորները։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում առանձնապես լայն ծավալ է ստացել բարձրորակ արտադրանք թողարկելու համար տարվող պայքարը։ Միայն

Երևանի Ստալինյան ռայոնի արտադրական ձեռնարկություններում այժմ 320 բրիգադաներ, ուր ընդգրկված են 2000-ից ավելի բանվորներ, պայքարում են «գերազանց որակի բրիգադայի» կոչման համար։

Բարձրորակ արտադրանքի թողարկման համար տարվող պայքարը մշտապես պետք է գտնվի ագիտատորների ուշադրության կենտրոնում։ Նրանք պետք է հանդիսանան աշխատավորության լայն սպառման բարձրորակ ապրանքներ տալու, գերազանց որակի մեքենաներ, շինանյութեր, գործիքներ ու այլ նյութեր արտադրելու վերաբերյալ մեր պարտիայի ու կառավարության որոշումները անշեղորեն կենսագործելու առաջամարտիկները։

Բարձրորակ արտադրանքի համար հաջող պայքար է տանում, օրինակ Երևանի Մահուդի ֆաբրիկայի կոլեկտիվը։ Այս տարվա անցած 8 ամիսների ընթացքում ֆաբրիկայի թողարկած արտադրանքի 97 տոկոսն առաջին տեսակի է։ Ֆաբրիկայի կոլեկտիվն այժմ պայքարում է միայն առաջին տեսակի արտադրանք տալու, «գերազանց որակի ֆաբրիկայի» կոչման արժանանալու, արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար։

Բարձրորակ արտադրանք տալու համար



այդպիսի ամենօրյա, հետևողական պայքարի շատ օրինակներ կարելի է բերել նաև ռեսպուբլիկայի ուրիշ արդյունաբերական ձեռնարկություններից։

Սակայն ռեսպուբլիկայի դեռևս ոչ բոլոր ագիտկոլեկտիվներն են, որ իրենց ամենօրյա խնդիրն են դարձրել արտադրանքի որակի բարելավման հարցը։ Այսպես օրինակ, արտադրանքի որակի լավացման համար ագիտացիոն-մասսայական լայն աշխատանք չի ծավալված Արդյունաբերական կոոպերացիայի ձեռնարկություններում և եթե այդ ձեռնարկությունների արտադրանքի որակը դեռևս բարձր չէ, ապա դրա գլխավոր պատճառներից մեկն էլ ագիտացիոն-մասսայական աշխատանքի անբավարար դրվածքն է։

Մեծ Հոկտեմբերի 33-րդ տարեդարձի և Հայաստանում սովետական իշխանության հաստատման 30-ամյակի պատվին մեր ռեսպուբլիկայում ծավալված սոցիալիստական մրցության մեջ չպետք է լինեն հետ մնացող գործարաններ, ցեխեր, բրիգադաներ ու բանվորներ— ահա այս նպատակին պետք է ուղղված լինի մեր արդյունաբերական ձեռնարկությունների ագիտկոլեկտիվների աշխատանքը, դրա համար պետք է պայքարի յուրաքանչյուր ագիտատոր։ Ագիտա-

տորներն ու ագիտկոլեկտիվները երբեք չպետք է հանգստանան ձեռք բերած նվաճումներով, նրանց աշխատանքի նշանաբանը պետք է լինի՝ ավելի բարձր սոցիալիստական մրցության դրոշը, ավելի շա՛տ ու բարձր որակի արտադրանք Հայրենիքին։ Այդ նպատակին հասնելու համար նրանք պետք է յուրաքանչյուր բանվորի ու բանվորուհու ակտիվությունը դարձնեն այն խնդիրները, որոնք մեր պարտիան ու կառավարությունը դնում են սոցիալիստական արդյունաբերության առաջ, ավելի լայնորեն մասսայականացնեն աշխատանքի նորագույն մեթոդները, արտադրության նորարարների, առաջավոր բանվորների փորձը, վեր հանեն առաջավորներին, քննադատեն հետ մնացողներին, բացահայտեն եղած թերությունները և պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ պայքարեն դրանց վերացման համար։

Բոլո՛ր ուժերը նվիրենք սոցիալիստական մրցությունից պատվով դուրս գալու, Մեծ Հոկտեմբերի 33-րդ տարեդարձը և Սովետական Հայաստանի 30-ամյակը արտադրական նորանոր նվաճումներով դիմավորելու համար։



## ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՆՈՐԱԿԱՌՈՒՅՑՆԵՐԸ

### ՍՍՌՍ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏՈՒՄ

# ՎՈԼԳԱ ԳԵՏԻ ՎՐԱ ԿՈՒՅԲԻՇԵՎՅԱՆ ՀԻԴՐՈԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆ ԿԱՌՈՒՑԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Կարևոր նշանակություն տալով Վոլգա գետի վրա Կույբիշևյան հիդրոէլեկտրակայան կառուցելուն, որը կապահովի էլեկտրաէներգիայի մատակարարումը Մոսկվա, Կույբիշև, Սարատով քաղաքների արդյունաբերական ձեռնարկություններին և երկաթուղիների էլեկտրիֆիկացումը, Զավոլժյեի հողերի ոռոգումը և Վոլգա գետի նավագնացության բարելավումը, ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը* որոշեց.

1. Վոլգա գետի վրա, Կույբիշև քաղաքի շրջանում, կառուցել հիդրոէլեկտրակայան՝ մոտ երկու միլիոն կիլովատ հզորությամբ միջին ջրառատության դեպքում տարեկան մոտ տասը միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի արտադրությամբ։

Հիդրոէլեկտրակայանի կառուցումը սկսել 1950 թվականին և լրիվ հզորությամբ շահագործման հանձնել 1955 թվականին։

2. Նախատեսել Զավոլժյեի մեկ միլիոն հեկտար հողերի ոռոգումը Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի էլեկտրաէներգիայի օգտագործման բազայի վրա։

3. Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի կառուցման ժամանակ նախատեսել Վոլգա գետի ամբարտակի վրայով լրացուցիչ մագիստրալ երկաթուղային կամրջի կառուցումը։

4. Նախատեսել Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի էլեկտրաէներգիայի հետևյալ բաշխումը.

ա) Մոսկվա քաղաքին տարեկան հաղորդել վեց միլիարդ 100 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա.

բ) Կույբիշև և Սարատով քաղաքների շրջաններին տարեկան հաղորդել երկու միլիարդ 400 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա.

գ) Զավոլժյեի հողերը ոռոգելու համար տարեկան հաղորդել մեկ միլիարդ 500 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։



5. Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի շինարարությունն իրականացնելու համար ստեղծել շինարարական կազմակերպություն՝ «Կույբիշևհիդրոշին»։

«Կույբիշևհիդրոշինի» պետ նշանակել ընկ. Ի. Վ. Կոմզինին, և շինարարության գլխավոր ինժեներ՝ ընկ. Ն. Ֆ. Շապոշնիկովին։

6. Հիդրոպրոեկտի (ընկ. Ս. Յա. Ժուկ) վրա դնել Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի կառուցման հետ կապված բոլոր նախագծային-հետախուզական և հետազոտական աշխատանքների կատարումը։

7. Պարտավորեցնել էլեկտրակայանների մինիստրությանը՝ մշակել Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանից տրվող բարձր լարվածության էլեկտրահաղորդման գծի կառուցման, ինչպես նաև էներգետիկ այն սիստեմների զարգացման նախագիծը, որոնք էլեկտրաէներգիա են ստանալու այդ կայանից։

8. Հաղորդակցության ճանապարհների մինիստրությանը՝ մշակել Վոլգա գետի ամբարտակի վրայով լրացուցիչ մագիստրալ երկաթուղային կամուրջ կառուցելու հետ կապված երկաթուղային մերձատար ուղիների նախագիծը։

9. ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրության վրա դնել Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի էլեկտրաէներգիայի օգտագործման բաղայի վրա Զավոլժյեի մեկ միլիոն հեկտար հողային տարածության ոռոգման պլանի կազմումը, ընդսմին հաշվի առնելով Զավոլժյեի տերիտորիայում, առաջին հերթին նոր ջրովի հողերում, հողագործության մեջ էլեկտրաէներգիայի արմատավորման անհրաժեշտությունը (էլեկտրավար և այլն)։



---

ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏՈՒՄ

## ՎՈԼԳԱ ԳԵՏԻ ՎՐԱ ՍՏԱԼԻՆԳՐԱԴՅԱՆ ՀԻԴՐՈԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆ ԿԱՌՈՒՑԵԼՈՒ, ՄԵՐՁԿԱՍՊՅԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԸ ՈՌՈԳԵԼՈՒ ԵՎ ՋՐՈՎԻ ԴԱՐՁՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Ժողովրդա-տնտեսական մեծ նշանակություն տալով այն միջոցառումներին, որոնք ապահովում են.

Ա) Պովոլժյեում խորշակների լուրջ աղբյուրներից մեկը հանդիսացող Մերձկասպյան հարթավայրերի կլիմայական պայմանների բարելավումը.

Բ) Մերձկասպյան հարթավայրի հյուսիսային մասի անապատային և կիսաանապատային շրջանների յուրացումը՝ այնտեղ անասնաբուծությունն ու հողագործությունը լայնորեն զարգացնելու համար.

Գ) Անդրվոլգյան հարավային շրջանների ոռոգումը՝ այնտեղ ինտենսիվ և կայուն հողագործություն զարգացնելու համար.

Դ) Սալսկի հարթավայրը, Սև հողերը և Նողայական տափաստանը ջրովի դարձնելու ու ոռոգելու՝ անասնաբուծությունը լայնորեն զարգացնելու և արդյունաբերական նշանակություն ունեցող անտառներ ու խորշակներից պաշտպանող անտառներ հիմնելու համար.

Ե) լրացուցիչ էլեկտրաէներգիայի մատակարարումը Կենտրոնին, Պովոլժյեին և Կենտրոնական-սևահողային մարզերին.

Զ) Վոլգա գետի ստորին հոսանքում նավագնացության պայմանների բարելավումը,

ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը

**որոշեց.**

1. Ստալինգրադ քաղաքի շրջանում, Վոլգա գետի վրա կառուցել առնվազն մեկ միլիոն յոթ հարյուր հազար կիլովատ կարողությամբ հիդրոէլեկտրակայան՝ միջին ջրառատության դեպքում տարեկան մոտ տասը միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի արտադրությամբ։

Հիդրոէլեկտրակայանի կառուցումն սկսել 1951 թվականին և լրիվ կարողությամբ շահագործման հանձնել 1956 թվականին։

2. Նախատեսել Ստալինգրադյան հիդրոէ-



լեկտրակայանի էլեկտրաէներգիայի հետևյալ բաշխումը՝

Ա) Մոսկվա քաղաքին տարեկան հաղորդել չորս միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա.

Բ) Կենտրոնական-Սևահողային մարզերի շրջաններին հաղորդել տարեկան մեկ միլիարդ երկու հարյուր միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա.

Գ) Ստալինգրադի, Սարատովի և Աստրախանի մարզերի շրջաններին հաղորդել տարեկան երկու միլիարդ ութ հարյուր միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա.

Դ) Անդրվոլգյան և Մերձկասպյան հողերը ոռոգելու և ջրովի դարձնելու համար տարեկան հաղորդել երկու միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

3. Իրագործել հետևյալ շինարարությունը.

Ա) Ստալինգրադի մագիստրալային ինքնահոս ջրանցք և ջրամատակարարման սիստեմ Ստալինգրադի ջրամբարից Մերձկասպյան հարթավայրի հյուսիսային մասում՝ Վոլգա և Ուրալ գետերի միջև մոտ վեց միլիոն հեկտար ընդհանուր տարածությամբ հողեր ոռոգելու համար.

Բ) ոռոգիչ սիստեմներ՝ Ստալինգրադի հիդրոէլեկտրակայանի էլեկտրաէներգիայի օգ-

տագործման բազայի վրա Ստալինգրադի ոռոգիչ ջրանցքից դեպի հյուսիս, Վոլգա և Ուրալ գետերի միջև, ինչպես նաև Վոլգա—Ախտուբայի մարգագետնում մեկ միլիոն հինգ հարյուր հազար հեկտար հող ոռոգելու համար, ընդ որում, նախատեսելով Մերձկասպյան շրջանների հողերի ոռոգումը.

Գ) ջրանցքներ և ոռոգիչ սիստեմներ՝ մոտ հինգ միլիոն հինգ հարյուր հազար հեկտար ընդհանուր տարածությամբ՝ Սարպինսկի հարթավայրը, Սև հողերը և Նողայական տափաստանը ջրովի դարձնելու և ոռոգելու համար.

Դ) ոռոգվող տերիտորիաներում (Մերձկասպյան և Սարպինսկի հարթավայր, Սև հողեր, Նողայական տափաստան) տնկել ավազները ամրապնդող անտառներ և կառուցել լավագույն հողերը ընտրովի ոռոգելու սխեմ՝ արոտավայրեր կազմակերպելու և մեծ չափերով անասնաբուծություն զարգացնելու համար։

4. Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանի կառուցումը իրագործելու համար ստեղծել «Ստալինգրադհիդրոշին» շինարարական կազմակերպություն։

«Ստալինգրադհիդրոստրոյի» պետ նշանակել ընկ. Ֆ. Գ. Լոգինովին և շինարարու-



թյան գլխավոր ինժեներ՝ ընկ. Ս. Ո. Մեդվեդևվին։

5. Հանձնարարել հիդրոպրոեկտին (ընկ. Ս. Յա. Ժուկ) Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանի և Ստալինգրադի մագիստրալային ջրանցքի շինարարության, ինչպես նաև Վոլգա և Թերեք գետերից Սարպինսկի հարթավայրը, Սև հողերը և Նողայական տափաստանը ոռոգող մագիստրալային ջրանցքների կառուցման հետ կապված բոլոր նախագծային-հետախուզական ու հետազոտական աշխատանքների կատարումը։ Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանի նախագծման ժամանակ նախատեսել Վոլգա գետի ամբարտակի վրա մագիստրալային երկաթուղային կամրջի կառուցումը։

6. Պարտավորեցնել էլեկտրակայանների մինիստրությանը՝ կազմելու այն էներգետիկ սիստեմների զարգացման նախագիծը, որոնք պետք է էլեկտրաէներգիա ստանան Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանից։

7. Հանձնարարել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը հետախուզությունների կատարումը, նախագծերի կազմումը և շինարարական աշխատանքների իրագործումը հետևյալ նպատակներով՝

Ա) Անդրվոլգայում մեկ միլիոն հինգ հարյուր հազար հեկտար հող ոռոգելու համար.

Բ) Ստալինգրադի ջրամբարից Մերձկասպյան հարթավայրի հյուսիսային մասում, Վոլգա և Ուրալ գետերի միջև ընդհանուր տարածությամբ մոտ վեց միլիոն հեկտար հող ջրովի դարձնելու և ընտրովի ոռոգելու համար։

Գ) Թերեք և Վոլգա գետերից Սարպինսկի հարթավայրում, Սև հողերում և Նողայական տափաստանում ընդհանուր տարածությամբ մոտ հինգ հարյուր հազար հեկտար հող ջրովի դարձնելու և ընտրովի ոռոգելու համար։

Նախագծերը մշակելիս նախատեսել էլեկտրաէներգիայի արմատավորումը հողագործության մեջ (էլեկտրավար և այլն), առաջին հերթին նոր ոռոգվող հողերում։

8. Մերձկասպյան հարթավայրի հյուսիսային մասում ու Վոլգա և Ուրալ գետերի միջև, Ստալինգրադի ոռոգիչ ջրանցքից հյուսիս, ինչպես նաև Սարպինսկի հարթավայրում, Սև հողերում և Նողայական տափաստանում անտառների տնկումը դնել Պետֆոնդի հողերում՝ ՍՍՌՄ Անտառային տնտեսության մինիստրության վրա, կոլխոզների հողերում՝ ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիս-



տրության վրա և սովխոզների հողերում՝ ՍՍՌՄ Սովխոզների մինիստրության վրա։

9. ՍՍՌՄ Սովխոզների մինիստրության վրա դնել՝ Մերձկասպյան հարթավայրի հյուսիսային մասի, Սարպինսկի հարթավայրի, Սև հողերի և Նողայական տափաստանի ջրովի դարձվող ու ոռոգվող շրջաններում անասնապահական խոշոր սովխոզների ստեղծումը։

10. ՍՍՌՄ Անտառային տնտեսության մինիստրությանը, ՍՍՌՄ Սովխոզների մինիստրությանը և ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը՝ ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի և Վ. Ի. Լենինի անվան Գյուղատնտեսական գիտությունների համամիութենական ակադեմիայի հետ միասին, մշակել Մերձկասպյան հարթավայրի տերիտորիայում Վոլգա և Ուրալ գետերի միջև գտնվող հողերում, ինչպես նաև Սարպինսկի հարթավայրում, Սև հողերում և Նողայական տափաստանում ավազները ամրապնդելու նպատակով անտառներ տնկելու և անտառամելիորատիվ միջոցառումների պլանը։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Դաշտապաշտպան անտառատնկման գլխավոր վարչության վրա դնել՝ անտառատնկումների և անտառամելիորատիվ միջոցառումների

սխեման կազմելու աշխատանքների ընդհանուր ղեկավարությունն ու կոորդինացումը։

11. ՍՍՌՄ Սովխոզների մինիստրությանը և ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրությանը՝ միջոցառումներ մշակել Մերձկասպյան հարթավայրի հյուսիսային մասի, Սարպինսկի հարթավայրի, Սև հողերի և Նողայական տափաստանի ջրովի դարձվող ու ոռոգվող շրջաններում անասնաբուծությունը զարգացնելու և արոտավայրեր կազմակերպելու համար։



ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԱՇԽԱՐՀԻ ԽՈՇՈՐԱԳՈՒՅՆ ԿՈՒՅԲԻՇԵՎՅԱՆ ԵՎ ՍՏԱԼԻՆԳՐԱԴՅԱՆ ՀԻԴՐՈԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆՆԵՐԸ

Երևանի Կիրովի անվան գործարանի ագիտատոր Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ 1—3 ցեխում անցկացրած զրույցը։

1920 թվականի փետրվարի 22-ին Մեծ ուսուցիչ Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ մշակվեց Ռուսաստանի էլեկտրիֆիկացման պետական պլանը՝ ԳՈԷԼՌՈ, որով նախատեսվում էր 15 տարվա ընթացքում կառուցել 1,5 միլիոն կիլովատ կարողությամբ էլեկտրակայաններ։

Վ. Ի. Լենինը բացառիկ մեծ նշանակություն էր տալիս այդ ծրագրի իրագործմանը և ԳՈԷԼՌՈ-ի պլանը համարում էր մեր պարտիայի երկրորդ ծրագիրը։ Նա սովորեցնում էր, որ առանց էլեկտրիֆիկացման լայն բազա ստեղծելու հնարավոր չէ կառուցել սոցիալիզմ, հնարավոր չէ անցնում կատարել դեպի կոմունիստական հասարակարգ։

Լենինի գործի մեծ շարունակող Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի ղեկավարությամբ կոմունիստական պարտիան ու Սովետական իշխանությունը կատարեցին լենինյան պատգամները մեր երկրի էլեկտրիֆիկացման մասին։

Արդեն 1935 թվականին ՍՍՌՄ-ում կար ոչ թե 30, ինչպես այդ նախատեսված էր ԳՈԷԼՌՈ-ի պլանով, այլ 147 նոր խոշոր էլեկտրակայաններ, որոնց մեջ հաշվվում էր և Դնեպրոգէսը։

1933 թվականի հունվարի 7-ին «Առաջին հնգամյակի հանրագումարները» զեկուցման մեջ ընկեր Ստալինը նշեց.

«Էլեկտրական էներգիա արտադրելու իմաստով մենք կանգնած էինք ամենավերջին տեղում։ Այժմ մենք առաջ ենք անցել առաջին տեղերից մեկը»։

Հայրենական Մեծ պատերազմի նախօրյակին ՍՍՌ Միության էլեկտրաէներգիայի արտադրանքը գերազանցեց ցարական Ռուսաստանի էլեկտրաէներգիայի արտադրանքի 1913 թվականի մակարդակը 25 անգամ։ ՍՍՌՄ-ն էլեկտրոէներգիայի արտադրանքի գծով ամբողջ աշխարհում բռնում է ամենաառաջնակարգ տեղերից մեկը, իսկ արդյու-



նաբերության էլեկտրիֆիկացման գծով՝ առաջին տեղը։ ՍՍՌՄ-ն դարձավ էկելտրականության երկիր։

Սովետական մարդիկ լավ են հիշում Վլադիմիր Իլյիչ Լենինի խոսքերը «Կոմունիզմը — դա սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան»։

Կոմունիզմի մեծ ճարտարապետ Ի. Վ. Ստալինի նախաձեռնությամբ մեր երկիրը նոր հսկայական թռիչք է կատարում էլեկտրիֆիկացման ասպարեզում։

1950 թվականի օգոստոսի 21-ին ՍՍՌՄ Մինիստրների Սովետը որոշում ընդունեց Վոլգա գետի վրա Կույբիշևյան հիդրոէլեկտրակայան կառուցելու մասին, իսկ օգոստոսի 31-ին որոշում ընդունեց Վոլգա գետի վրա Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայան կառուցելու, Մերձկասպյան շրջանները ոռոգելու և ջրովի դարձնելու մասին։

Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի հզորությունը լինելու է մոտ երկու միլիոն կիլովատ՝ տարեկան մոտ 10 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի արտադրությամբ։

Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանը կապահովի և կմատակարարի էլեկտրաէներգիա՝

— Մոսկվային տարեկան 6 միլիարդ 100 միլիոն կիլովատ-ժամ,

— Կույբիշևի և Սարատովի քաղաքների շրջաններին տարեկան 2 միլիարդ 400 միլիոն կիլովատ-ժամ,

— Զավոլժյեի (Անդրվոլգյան) հողերը ոռոգելու համար տարեկան 1 միլիարդ 500 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանը ունենալու է մեկ միլիոն 700 հազար կիլովատ կարողություն՝ տարեկան մոտ 10 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի արտադրությամբ։

Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանը էլեկտրաէներգիա կապահովի և կմատակարարի՝

— Մոսկվային տարեկան 4 միլիարդ կիլովատ-ժամ,

— Կենտրոնական-Սևահողային մարզերի շրջաններին տարեկան մեկ միլիարդ 200 միլիոն կիլովատ-ժամ,

— Ստալինգրադի, Սարատովի և Աստրախանի մարզերի շրջաններին 2 միլիարդ 800 միլիոն կիլովատ-ժամ,

— Զավոլժյեի (Անդրվոլգյան) և Մերձկասպյան հողերը ոռոգելու ու ջրովի դարձ-



նելու համար 2 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Երկու հիդրոէլեկտրակայանները տարեկան արտադրելու են մոտ 20 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Գաղափար կազմելու համար այդքան էլեկտրաէներգիայի մասին, հիշենք, որ 20 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի կատարած աշխատանքը մարդկային ուժով կատարելու համար օրական կպահանջվի մոտ 132 միլիոն բանվոր։ Երկու հիդրոէլեկտրակայանների էլեկտրաէներգիայի հզորությունը մոտ տասը անգամ ավելի է լինելու, քան ամբողջ ցարական Ռուսաստանի էլեկտրակայանների հզորությունը։ Նոր հիդրոէլեկտրակայանների հզորությունը երկու և կես անգամ գերազանցելու է այն հզորությանը, որը նախատեսված էր ԳՈԷԼՌՈ-ի հայտնի պլանով 10—15 տարվա ընթացքում։ Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանների արտադրած էլեկտրաէներգիայի քանակը գերազանցելու է այն էլեկտրաէներգիայի քանակին, որը արտադրում են՝ Իտալիան, Շվեյցարիան և Շվեդիան միասին վերցրած։

Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի կառուցման ժամանակ կատարվելու է 150 միլիոն խորանարդ մետր հողային աշխատանք,

դրվելու է 6 միլիոն խորանարդ մետր բետոն, երկաթ-բետոն։ Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանի պատնեշը կբարձրացնի Վոլգայի մակարդակը և կայանից հյուսիս կստեղծվի մի ծով՝ «Կույբիշևյան ծով», որի երկարությունը կլինի 500 կիլոմետր, այսինքն՝ մոտ 7 անգամ երկար, քան Սևանա լիճը։

Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանի հիդրոհանգույցի և մագիստրալ ջրանցքի կառուցման համար դրվելու է 7 միլիոն խորանարդ մետր բետոն, երկաթ-բետոն, դուրս է տարվելու 600 միլիոն խորանարդ մետր հող։ Այդքան հողով կարելի է ծածկել ամբողջ Բելգիայի տերիտորիան երկու սանտիմետր հաստությամբ հողաշերտով։

Այդ հիդրոէլեկտրակայանները կարտադրեն ամենաէժան էլեկտրաէներգիա։ Վառելիքով աշխատող էլեկտրակայաններում, որպեսզի ստացվի այնքան էլեկտրաէներգիա, որքան արտադրելու են երկու հսկաները, կպահանջվի տարեկան արդյունահանել, տեղափոխել և այրել լրիվ ծանրաբեռնվածությամբ մոտ 20 հազար գնացք վառելիք։

Երկու հիդրոէլեկտրակայաններն էլ կառուցվելու են հինգ տարում՝ Կույբիշևյանը կառուցվում է այս տարվանից և կավարտ-



վի 1955 թվականին, իսկ Ստալինգրադյանի կառուցումը կսկսվի 1951 թվականին և կավարտվի 1956 թվականին։ Պատմությանը հայտնի չեն այդպիսի վիթխարի կառուցումներ, այդպիսի կարճ ժամկետներում։

Նեղոսի ամբարտակի կառուցումը դելտայի մոտ տևել է 68 տարի, Պանամայի ջրանցքինը՝ 35 տարի, Սուեզի ջրանցքինը՝ 22 տարի։ ԱՄՆ-ի ամենախոշոր հիդրոէլեկտրակայանը Բոուլդեր-Դեմը Կոլորադո գետի վրա 40 տարի է ինչ կառուցվում է, իսկ ԱՄՆ-ի երկրորդ խոշոր հիդրոէլեկտրակայանը Կոլումբիա գետի վրա, Վաշինգտոն քաղաքի մոտ 20 տարի է ինչ կառուցվում է և այնուամենայնիվ երկու հիդրոէլեկտրակայաններն էլ չեն հասել նախատեսված լրիվ հզորության։

Կառուցման տեմպը մեր սովետական երկու հսկաներում արտակարգ թափ է ունենալու։ Կույբիշևյան հիդրոկայանի կառուցման ժամանակ յուրաքանչյուր ժամում դրվելու է ավելի քան 1000 խորանարդ մետր երկաթ-բետոն։ Այստեղ առաջին անգամ գործարկվելու են սովետական հզոր հողածծիչներ, որոնց արտադրողականությունը մեկ ժամում 1000 խորանարդ մետր է։ Աշխատելու են հզոր էլեկտրաէքսկավատոր-

ներ, որոնց արտադրողականությունը մեկ ժամում 200—300 խորանարդ մետր է։

Մեկ հնգամյակում կառուցել աշխարհի ամենամեծ և ամենահզոր հիդրոէլեկտրակայանները, այդ փաստն իսկ վկայում է Սովետական Միության հզորության և ուժի, առաջավոր տեխնիկայի և հասունության մասին, նրա խաղաղասիրական ստալինյան քաղաքականության մասին։

ՍՍՌՄ-ում հիդրոէներգետիկան ծառայում է ժողովրդի շահերին և ջրային ռեսուրսները օգտագործվում են ռացիոնալ ու կոմպլեքսային ձևով։

Կապիտալիստական երկրներում նավթի և քարածխի արքաները, որոնք տեր են ջերմաէլեկտրակայանների՝ աշխատում են խափանել հիդրոէլեկտրակայանների կառուցումը, որպեսզի ավելի մեծ շահույթ ստանան։ Կապիտալիստական երկրներում ռացիոնալ չեն օգտագործվում ջրային ռեսուրսները, կառուցված և կառուցվելիք հիդրոէլեկտրակայանները ծառայում են պատերազմի նախապատրաստությանը, աշխատավորների շահագործմանը։

Երկու հսկա էլեկտրակայանները Վոլգայի վրա կառուցում է ժողովուրդը. նրանք ծառայելու են ժողովրդի շահերին։ Նրանք կփոխեն



Մերձվոլգյան, Անդրվոլգյան, Մերձկասպյան շրջանների կլիման ի օգուտ մարդու, չտեսնված ծաղկման կհասնի արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, տրանսպորտը, անճանաչելի կդառնա Սովետական Միության սիրտը՝ Մոսկվան։

Մերձվոլգյան շրջանը վերջին 65 տարվա ընթացքում 20 երաշտ է տեսել։ Խորշակը հաճախ ոչնչացնում է ցանքը։ Մերձկասպյան դաշտավայրում «սև ամպն» է հաճախ երևում, որը մանր ավազներից է բաղկացած։ Ավազի թմբերը հաճախ շարժվում են տեղից-տեղ։ Այդ բոլորին վերջ կդնի սովետական մարդու շինարար ձեռքը։ Կառուցվելու են 1000 կիլոմետր երկարության ջրանցքներ։ 14 միլիոն հեկտար հողամաս ոռոգվելու և ջրովի է դառնալու երկու հիդրոէլեկտրակայանների գործարկումից հետո։

Եթե 14 միլիոն հեկտար հողամասում միայն հացահատիկ ցանվի և ամեն մի հեկտարից միջին հաշվով ստացվի նույնիսկ 25 ցենտներ ցորեն, ապա դա կանի տարեկան մոտ 2 միլիարդ 200 միլիոն փութ ցորեն, իսկ այդտեղի հացահատիկը և ընդհանրապես մթերքները աչքի են ընկնում իրենց համեղությամբ։

Գյուղատնտեսությունը կստանա առատ էլեկտրաէներգիա։ Կծաղկեն կոլխոզային դաշտերը։ Վարը, ցանքը, բերքահավաքը, կովերի կիթը, ոչխարների խուզը ամբողջովին կկատարվի էլեկտրամեքենաներով։ Աշխատատար պրոցեսները կմեքենայացվեն ինչպես երբեք, գյուղատնտեսական աշխատանքը կդառնա ինդուստրիալ աշխատանքի մի այլատեսակը։

Ժողովրդական տնտեսության մեջ բացառիկ մեծ է այդ երկու հսկա հիդրոէլեկտրակայանների նշանակությունը։ Նրանց գործարկումով և նրանց էլեկտրաէներգիայի օգտագործումով ՍՍՌՄ արդյունաբերությունը տարեկան կտնտեսի 45 միլիոն տոննա վառելիք։

Երկու հսկաները իրենց էլեկտրաէներգիայից մեծ բաժին են հանելու մեր սիրելի Մոսկվային՝ տարեկան ավելի քան տասը միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Երկաթուղու բոլոր գծերը, որոնք մոտենում են Մոսկվային, կէլեկտրիֆիկացվեն։ Դառնում է հնարավոր Մոսկվայի արդյունաբերության լրիվ էլեկտրիֆիկացումը։ Գործարանային ծխնելույզների ծուխ էլ չի լինի Մոսկվայում։

Վոլգան, որ այժմ, հատկապես ամռան



երկրորդ կեսին, չի կարողանում խոշոր նավեր ընդունել իր վրա ջրապակասության պատճառով, կդառնա հզոր ջրային մագիստրալ, կբարձրանա նրա մակարդակը և նրա վրայով ազատ կանցնեն խոշոր նավերը։

Ջրային տրանսպորտի նշանակությունը շատ մեծ է։ Հիշենք, որ 2000 տոննա բեռը երկաթուղով տեղափոխելու համար պահանջվում է շոգեկառք 1200 ձիու ուժի, իսկ նավը այդպիսի ուժով կարող է տեղափոխել 25 հազար տոննա բեռ։ Վոլգան էլեկտրակայանների գործարկումից հետո կդառնա հզորագույն ջրային մագիստրալ և կարող է 40 անգամ ավելի բեռ տեղափոխել, քան երկաթուղային մագիստրալը։ Վոլգայով առատորեն կտեղափոխեն հաց, նավթ, բամբակ, շինափայտ, ձուկ, մրգեր, բանջարեղեն, մեքենաներ և այլ բեռներ։

Վոլգայի վրայի հիդրոէլեկտրակայանները կկառուցի ամբողջ երկիրը։ ՍՍՌՄ յուրաքանչյուր աշխատավոր կաշխատի իր ավանդը մտցնել այդ մեծ կառուցումներում, որոնք օրինական հպարտության զգացում են առաջացնում սովետական յուրաքանչյուր քաղաքացու մեջ։



## ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԱՐՄԱՎԻՐՈՒՄ

Հոկտեմբերյանի շրջանի Արմավիր գյուղում կայացավ այդ ենթաշրջանի ագիտատորների խորհրդակցություն, որը քննության առավ բամբակի, խաղողի և խորդենու բերքահավաքի շրջանում կոլտնտեսականների մեջ տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքների կազմակերպման հարցը: Խորհրդակցությանը մասնակցում էին նաև Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ, բարձր բերքի վարպետները, որոնք պատմեցին իրենց աշխատանքի փորձի մասին:

Ստորև տպագրում ենք խորհրդակցությանը մասնակցողներից մի քանիսի ելույթները:

## ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԻ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐԸ

Արմավիրի կոլտնտեսության ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԻ ելույթից:

Ինչպես գարնանայանի, ցանքերի ու այգիների ամառային մշակման ընթացքում, այնպես և բերքահավաքի շրջանում մեր ագիտկոլեկտիվը կոլտնտեսականների մեջ



տարվող ագիտացիոն-մասսայական ամբողջ աշխատանքը տեղափոխել է դաշտ:

Բոլոր կոլտնտեսականներին ագիտացիոն-մասսայական աշխատանքներում ներգրավելու նպատակով մենք յուրաքանչյուր օղակի համար առաջադրել ենք ագիտատոր: Որպես կանոն շաբաթական երկու անգամ հրավիրում ենք ագիտկոլեկտիվի խորհրդակցություն, որտեղ ագիտատորները կոնկրետ առաջադրանքներ են ստանում իրենց առաջիկա անելիքների վերաբերյալ:

Չնայած ընդամենը 8—10 օր է, ինչ մեր կոլտնտեսությունն սկսել է բամբակի մասսայական բերքահավաքը, բայց այդ օրերն էլ մեզ բավականին ուսանելի փորձ տվեցին ագիտացիոն-մասսայական աշխատանքի կազմակերպման բնագավառում: Այսպես օրինակ, չնայած մինչև բերքահավաքն սկսելը ագիտատորներն իրենց զրույցների ժամանակ կոլտնտեսականների ուշադրությունը շարունակ հրավիրում էին բամբակի հավաքման որակի, պետությանը միայն բարձրորակ հումք հանձնելու վրա, այնուամենայնիվ բերքահավաքի առաջին և երկրորդ օրերը հավաքած բամբակը ցածր որակի էր: Այդ

անհանդուրժելի թերության վերջ տալու համար պարտկազմակերպության հանձնարարությամբ ագիտկոլեկտիվը կիրառեց հետևյալ միջոցառումները։

Որպեսզի կոլտնտեսականների հետ որակյալ չանաք կատարելու վերաբերյալ զրույցները վերացական բնույթ չկրեն, մենք կատարեցինք այսպիսի հաշիվ. եթե առաջին մի քանի օրերի ընթացքում պետությանը հանձնած մեր ամբողջ հումքը լիներ բարձր տեսակի, ապա կոլտնտեսությունը դրա դիմաց կստանար 180 հազար ռուբլի, այնինչ այդ բամբակի արժեքը կազմեց 167 հազար ռուբլի, այսինքն՝ 13 հազար ռուբլով պակաս։ Եվ այդ միայն այն պատճառով, որ ոչ ամբողջ հումքն էր առաջին տեսակի։

Ագիտկոլեկտիվում ագիտատորներին ծանոթացնելով այդ թվերի հետ, մենք միաժամանակ նրանց հանձնարարեցինք զրույցների ժամանակ օրինակներ բերել նաև իրենց ամրացված օղակների կոլտնտեսականների աշխատանքից, կոնկրետ կերպով ցույց տալով, թե անվորակ չանաքը ինչ վնասներ է հասցնում ինչպես պետությանը, այնպես և կոլտնտեսությանը և կոլտնտեսականներին։



Զինված այդ տվյալներով, հենց հաջորդ օրվանից ագիտատորները բոլոր օղակներում ու բրիգադաներում լայն պայքար սկսեցին պետությանը միայն բարձր որակի բամբակի հումք հանձնելու համար։

Բայց մեր ագիտկոլեկտիվը դրանով չբավարարվեց։ Մենք բարձրորակ հումքի համար պայքար սկսեցինք ծավալել պատի թերթի և խլյիչովկաների միջոցով, պատրաստեցինք որակի ցուցանիշների տախտակներ, յուրաքանչյուր չանաքավորի բարդանի վրա գրեցինք նրա ազգանունը և այլն։ Բացի այդ, մենք ցածրորակ հումք հանձնողների համար կազմակերպեցինք Սոցիալիստական Աշխատանքի Հերոս ընկ. Հակոբ Սարոյանի զրույցը։ Անվանի բամբակագործը պատմեց իր և իր ղեկավարած բրիգադայի աշխատանքի փորձի մասին։ Եվ ահա պետությանը բարձրորակ հումք հանձնելու համար ծավալված այս ագիտացիոն-բացատրական աշխատանքը շուտով իր փայլուն արդյունքները տվեց։ Բամբակի բերքահավաքն սկսվելու հինգերորդ օրվանից մեր կոլտնտեսությունը պետությանը հանձնում է միայն առաջին տեսակի բամբակ։

Մեզ, ագիտատորներիս վրա մեծ խնդիրներ են դրված նաև կոլտնտեսությունների խոշորացման կապակցությամբ։ Ինչպես հայտնի է, մինչև միացումը խոշոր կոլտնտեսությունները տնտեսապես ավելի ամուր էին, հարուստ, զարգացած, քան փոքր կոլտնտեսությունները, որոնք հնարավորություն չունեին օգտվելու խոշոր տնտեսության տվող բոլոր առավելություններից։ Մեր կոլտնտեսականները գիտեն, որ կոլտնտեսությունների միացումից հետո անհամեմատ ավելի կհարստանա կոլտնտեսությունը, ավելի լավ կսկսեն ապրել իրենք։ Մեր, ագիտատորներիս խնդիրն է՝ յուրաքանչյուր կոլտնտեսականի սեփականությունը դարձնել այն առավելությունները, որ տալիս է խոշոր տնտեսությունը մեքենայացման, հողերի ճիշտ օգտագործման, ագրոտեխնիկայի լրիվ կիրառման և ուրիշ շատ բաների շնորհիվ։

Մեր այժմյան կոլտնտեսությունը կազմվել է նախկին երեք գյուղերի՝ Արմավիրի, Արևիկի և Հայկավանի կոլտնտեսություններից։ Դրանցից ամենից խոշորը և հետևապես ամենից հարուստն ու զարգացածը Արմավի-



րի կոլտնտեսությունն էր։ 1949 թվին նրա եկամուտները կազմեցին 4,5 միլիոն ռուբլի, իսկ օրինակ Արևիկի կոլտնտեսության եկամուտները կազմեցին միայն 1,5 միլիոն ռուբլի։ Արմավիրի կոլտնտեսականները յուրաքանչյուր աշխօրի դիմաց մոտ երկու անգամ ավելի եկամուտ ստացան, քան Արևիկի կոլտնտեսականները։ Արևիկի կոլտնտեսության հողերի մոտ 25 տոկոսը մնում էր անմշակ, իսկ մշակվող հողերը չունեին լրիվ հեկտարներ։ Ինչ խոսք, որ այս տարվանից սկսած խոշոր կոլտնտեսությունը հնարավորություն կունենա լրիվ մշակել բոլոր հողերը, բոլոր կոլտնտեսականներն էլ կստանան բարձր եկամուտ, կոլտնտեսությունն ավելի արագ քայլերով կընթանա դեպի կոմունիզմ։

Մեր ագիտկոլեկտիվը բոլոր ագիտատորներին առաջադրանք տվեց՝ օգտագործելով այս փաստերը իրենց զրույցների ժամանակ կոլտնտեսականներին բացատրել խոշոր կոլտնտեսության առավելությունները, օգնել կոլտնտեսականներին ավելի լավ և արդյունավետ աշխատելու։

## ԻՆՉՊԵՍ ԵՆՔ ՄԵՆՔ ԱՇԽԱՏՈՒՄ

Բամբակաշատ գյուղի կոլտնտեսության օղակավարուհի, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս ընկ. ԱԳՆԵՍԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ելույթից

Անցյալ տարի բամբակի բարձր բերք ստանալու համար մեր հարազատ պետության կողմից ես արժանացա մեծագույն պարգևի՝ ինձ շնորհվեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։ Ի պատասխան այդ մեծագույն պարգևի մեր օղակը որոշեց այս տարի ստանալ ավելի բարձր բերք՝ օղակի մշակած դաշտի յուրաքանչյուր հեկտարից տալ 80 ցենտներ լավորակ բամբակ։

Այդ խոստումը կատարելու համար մենք պայքարում ենք դեռ ձմեռվանից։ Մեր օղակը ագրոտեխնիկական կանոնների լրիվ կիրառումով կատարեց գարնանացանը, բամբակի ամբողջ մշակումը և այժմ բավական է նայել մեր դաշտերին, համոզվելու համար, որ մենք իրոք բամբակի բարձր բերք ենք աճեցրել։ Բայց ինչպես ասում են, քանի դեռ բերքը դաշտումն է, այն մերը չի։ Մեր օղակի անդամները շատ լավ են զգում, թե



ինչ պատասխանատու շրջան ենք ապրում և մոբիլիզացրել են իրենց բոլոր ուժերը՝ առատ բերքն անկորուստ և արագ հավաքելու, այն մեր պետության շտեմարաններն հանձնելու համար։

Մեր օղակի ինչպես անցյալ, այնպես և այս տարվա լավ աշխատանքում ոչ մի առանձին «գաղտնիք» չկա, այդպես կարող է աշխատել յուրաքանչյուր օղակ։ Մեր աշխատանքի ամբողջ «գաղտնիքը» կայանում է նրա յուրաքանչյուր անդամի բուռն հայրենասիրության մեջ, նրա սոցիալիստական բարձր գիտակցության մեջ։ Մեր օղակի 12 անդամներից յուրաքանչյուրը տոգորված է մայր Հայրենիքին ավելի շատ և բարձր որակի բամբակի հումք տալու, մեր կյանքն ավելի հարուստ ու երջանիկ դարձնելու մտքով։ Եվ իրենց այդ ցանկությունն ի կատար ածելու համար նրանք չեն խնայում ոչ մի ջանք։

Մենք ամբողջ օղակով դաշտ ենք գնում վաղ լուսաբացին և ամբողջ օրը լրիվ չափով, ռացիոնալ կերպով օգտագործում ենք բերքահավաքի համար։ Օղակի յուրաքանչյուր անդամ նախօրոք գիտի, թե ինչ հողակտոր

է նա այդ օրը չանաքելու, ինչպիսին է լինելու նրա մարշրուտը։ Որպես կանոն մեր օղակի բոլոր անդամներն էլ չանաքը կատարում են երկու ձեռքով։

Բոլորի հետ չանաք անելով հանդերձ ես ուշադրությամբ հետևում եմ իմ օղակի յուրաքանչյուր անդամի աշխատանքին, հարկ եղած դեպքում օգնում նրան, ցույց տալիս, թե ինչպես պետք է աշխատել։

Այժմ մի քանի խոսք իմ աշխատանքի մեթոդի մասին։ Անցյալ տարի ես օրական միջին հաշվով հավաքում էի 250—300 կիլոգրամ բամբակ։ Այս տարի էլ, չնայած մեր բամբակենին դեռևս լավ չի բացվել, հավաքում եմ 200 և ավելի կիլոգրամ՝ նորմայով նախատեսված 60 կիլոգրամի փոխարեն։ Առաջադրանքի այդպիսի բարձր գերակատարման հասնելու հիմնական պայմաններն են՝ ժամանակի լրիվ և ռացիոնալ օգտագործումը, արագաշարժությունը և վարժությունը։

Որպեսզի ժամանակը լրիվ օգտագործեմ, ես կապում եմ 3 գոգնոց։ Երբ առաջին գոգնոցը լցվում է, ես այն արձակում, թողնում եմ մարգի մեջ և շարունակում եմ չանաքը։



Ապա նույն կարգով մարգի մեջ եմ թողնում նաև բամբակով լի երկրորդ գոգնոցը։ Իսկ երբ լցվում է երրորդ գոգնոցը, ես արդեն հասած եմ լինում մարգի մյուս ծայրը։ Ապա հետ եմ դառնում, վերցնում երեք գոգնոցները և բերում դատարկում եմ մարգի սկզբում և նորից նույն կարգով շարունակում աշխատանքը։

Ինչ վերաբերում է արագաշարժությանը, ապա կասեմ հետևյալը։ Արագ հավաքելու համար պետք է վարժվել կնգուղներում վաղօրոք տեսնել հավաքելիք բամբակը։ Ինչպես ասացի, ես հավաքում եմ երկու ձեռքով։ Երբ աջ ձեռքս մեկնում եմ դեպի կնգուղը, հենց այդ ժամանակ էլ նախապատրաստում, տեսնում եմ ձախ ձեռքիս համար վերցվելիք կնգուղները և այսպես շարունակ։ Այսպիսով մեկ ձեռքս դեռ բամբակի կնգուղին չհասած, փնտրում եմ մյուս ձեռքիս հավաքելիք կնգուղը։ Այդ բանը դժվար է, բայց հետո այն սովորական կդառնա և առանձին լարվածություն չի պահանջի։

Յուրաքանչյուր կոլխոզնիկ կարող է բամբակ հավաքելու օրվա առաջադրանքը գերակատարել 2—3 անգամ և ավելի։

# ԼԱՅՆՈՐԵՆ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆԵՆՔ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ

Ժդանովի անվան կոլտնտեսության ագիտատոր ընկ. Խ. ԽԱՉԻԿՅԱՆԻ ելույթից:

*Ահա տասը տարի է, ինչ ես մեր կոլտնտեսությունում աշխատում եմ որպես ագիտատոր և իմ անձնական փորձից ելնելով կարող եմ ասել, որ կոլտնտեսության այն օղակում և բրիգադայում, որտեղ ագիտացիոն-մասսայական աշխատանքը դրված է իր բարձրության վրա, այնտեղ միշտ էլ օրինակելի է աշխատանքային կարգապահությունը, ապահովված է բարձր բերքը:*

*Ինչպես գյուղատնտեսական բոլոր աշխատանքների ժամանակ, այնպես և բերքահավաքի շրջանում կոլտնտեսականների մեջ տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը պետք է ունենա բազմապիսի ձևեր, այդ ձևերը պետք է փնտրենք ու կիրառենք մենք, ագիտատորներս:*

*Բամբակի բերքահավաքն սկսելու այս տասը օրում, օրինակ, բերքն արագ և անկորուստ հավաքելու համար ես ագիտացիա*



*եմ տարել հետևյալ ձևերով և մեթոդներով: Հիմնականում ես կիրառել եմ առաջավորների փորձով հետ մնացողներին օգնելու, համոզելու մեթոդը: Բամբակի բերքահավաքի առաջին օրերը մեր բրիգադայի շատ անդամներ չէին կատարում օրվա առաջադրանքը և հավաքված բամբակն էլ ցածր որակի էր: Ես խնդրեցի երկրորդ բրիգադայի անդամ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս ընկ. Սաթենիկ Հարությունյանին՝ զրուցել մեր բրիգադայի կոլտնտեսականների հետ, պատմել իր աշխատանքի փորձի մասին, ցույց տալ, թե ինչպես պետք է աշխատել: Ընկ. Հարությունյանը ոչ միայն զրուցեց, այլև կոնկրետ կերպով ցույց տվեց, թե ինչպես պետք է արագ և բարձր որակով չանաք կատարել: Կոլտնտեսականները շատ բան սովորեցին անվանի բամբակագործից:*

*Ես ամեն օր գնում եմ դաշտ և կոլտնտեսականներին հայտնում, թե նրանցից յուրաքանչյուրը նախորդ օրը որքան և ինչ որակի բամբակ է հավաքել, ինչքան աշխօր է վաստակել: Շատ և բարձրորակ բամբակ հավաքելու վերաբերյալ ես ագիտացիա եմ տանում նաև խլյչովկայի միջոցով, որը լույս եմ ընծայում շաբաթը 2 անգամ:*

Եվ ահա այսօր մեր բրիգադայի բոլոր անդամները կատարում և գերակատարում են բամբակի հավաքման օրվա առաջադրանքները, իսկ բրիգադան այժմ պետությանն է հանձնում միայն բարձրորակ հումք։

Ես պետք է ասեմ, որ ինչպես մեր, այնպես էլ ենթաշրջանի մյուս կոլտնտեսություններում բերքահավաքի շրջանում դեռևս վատ է կազմակերպված ցուցադրական ագիտացիան։ Բերքահավաքի ամբողջ շրջանում մեր կոլտնտեսությունների հասարակական վայրերում՝ ակումբներում, գրասենյակներում, կինո-թատրոնների շենքերում, հրապարակներում պետք է ցուցանիշների տախտակների, պլակատների և այլ միջոցներով ցույց տրվի բամբակի, խաղողի, խորդենու և մյուս կուլտուրաների բերքահավաքի վիճակը կոլտնտեսությունում, ի լուր բոլորի պետք է ցուցադրվի առաջավորների աշխատանքը, պետք է խարազանվեն հետ մնացողները։

Իսկ դաշտերում, յուրաքանչյուր օղակի և բրիգադայի հողամասերում պետք է լինեն ցուցանիշների հատուկ տախտակներ, որոնք պետք է ցայտուն կերպով ցույց տան, թե ինչպես է աշխատում այդ օղակը կամ բրիգադան։





# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ՈՐՈՇՈՒՄԸ՝ ՎՈԼԳԱՅԻ ՎՐԱ ԱՇԽԱՐՀՈՒՄ ՄԵԾԱԳՈՒՅՆ ԿՈՒՅԲԻՇԵՎՅԱՆ ԵՎ ՍՏԱԼԻՆԳՐԱԴՅԱՆ ՀԻԴՐՈԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆՆԵՐԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՄԱՍԻՆ

1 Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը մեր երկրի էլեկտրիֆիկացման նշանակության մասին՝ որպես Սովետական Միության արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման հիմնական պայմանի։

2. Մեր երկրի էլեկտրիֆիկացման լենինյան-ստալինյան պլանի կենսագործումը հետպատերազմյան ստալինյան հնգամյակում։

3. Սովետական Հայաստանի էլեկտրաարդյունաբերության նվաճումները հետպատերազմյան ստալինյան հնգամյակի տարիներին։

4. Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանների վիթխարի շինարարությունների վերաբերյալ որոշումները հանդիսանում են սովետական ժողովրդի խաղաղ ստեղծարար աշխատանքի աչքի ընկնող հաջողությունների արտահայտությունը։

*5. Վոլգան որպես ջրային խոշորագույն մագիստրալ։*

*6. Ստախանովականների լավագույն նվաճումները, արտադրության առաջավորների փորձը դարձնենք էլեկտրաարդյունաբերության բանվորների սեփականությունը։*

*7. Էլեկտրաէներգիայի խնայողաբար օգտագործումը օգնում է արդյունաբերության և գյուղատնտեսության պլանները ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու գործին։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ԼԵՆԻՆ.— Երկեր, 26-րդ հատոր, էջ 46—49, 58—59, 434 (ռուսերեն 3-րդ հրատար.)։

Ի. ՍՏԱԼԻՆ.— Երկեր, 5-րդ հատոր, էջ 55—57։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թ. փետրվարի 9-ին։ *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով։*

ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց։ *էջ 328—329։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ Վոլգա գետի վրա Կույբիշևյան հիդրոէլեկտրակայան կառուցելու մասին։ *«Ս. Հ.» 1950 թ. օգոստոսի 22։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ Վոլգա գետի վրա Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայան կառուցելու, Մերձկասպյան շրջանները ոռոգելու և



ջրովի դարձնելու մասին։ *«Ս. Հ.» 1950 թ., սեպտեմբերի 1։*

ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.— Հաշվետու զեկուցում Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարում ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին։ *Հայպետհրատ, 1948 թ., էջ 21—31։*

Կոմունիզմի մեծ կառուցումները։ *«Պրավդա»-ի առաջնորդողը տպագրված «Ս. Հ.»-ի 1950 թ. սեպտեմբերի 5-ի համարում։*

Նոր հիդրոկայանները և նավարկությունը Վոլգայի վրա։ *Զրույց ՍՍՌՄ Գետային նավատորմի մինիստրի տեղակալ ընկ. Պ. Վ. Չերվենկոյի հետ։ Տպագրված «Ս. Հ.»-ի 1950 թ. սեպտեմբերի 5-ի համարում։*

## II

## ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՆԱԽԱՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

*1. Տարեկան պլանները ժամկետից շուտ կատարելու և գերազանց որակի արտադրանք տալու համար ծավալված սոցիալիստական մրցությունը սովետական մարդկանց բոցաշունչ հայրենասիրության ցայտուն արտահայտությունն է։*

*2. Տարեկան պլանը նյութական և դրամական միջոցների նվազագույն ծախսմամբ կատարելը և արտադրանքի ինքնարժեքի իջեցումը՝ արդյունաբերության բոլոր աշխատողների տնտեսական-քաղաքական կարևորագույն խնդիրն է։*

*3. Միայն գերազանց որակի արտադրանք թողարկելը արդյունաբերության աշխատողների պատվի գործն է։*

*4. Արտադրության առաջավորների փորձը դարձնել բոլոր բանվորների, ինժեներների, տեխնիկների և վարպետների սեփականությունը։*

*5. Ինչպես են կատարում մեր գործարանը, ցեխը, բրիգադան և առանձին բանվորները Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 33-րդ տարեդարձի առթիվ սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. Ստալին.— Մրցությունը և մասսաների աշխատանքային վերելքը։ *Երկեր, 12-րդ հատոր, էջ 122—126։*

ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1950 թվականի երկրորդ եռամսյակի պետական պլանների կատարման արդյունքների մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական վիճակագրական վարչությունների հաղորդագրությունները։ *Տպագրված «Ս. Հ.»-ի 1950 թ. հուլիսի 29-ի և օգոստոսի 1-ի համարներում։*

Նորարարների փորձը բոլոր բանվորներին։ *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1950 թ. սեպտեմբերի 6-ի համարում։*



Մեր ժամանակի անճողրաճարելի շարժումը։ *Հոդված, տպագրված «Ս. Հ»-ի 1950 թ. օգոստոսի 31-ի համարում։ 3-րդ էջ։*

*III*

## ՄԵՐ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆԸ ԴԱՐՁՆԵՆՔ ՍՏԱԽԱՆՈՎՅԱՆ

*1. Ընկեր Ստալինը ստախանովյան շարժման՝ որպես մեր ժամանակի անհաղթահարելի շարժման մասին։*

*2. Կոլեկտիվ ստախանովյան աշխատանքը՝ սոցիալիստական արդյունաբերության նորանոր հաջողությունների աղբյուրն է։*

*3. Ստախանովյան ձեռնարկությունը դա արտադրության բոլոր միջոցները լրիվ օգտագործող, գրաֆիկով համաչափ բարձրացող, արտադրանքի ինքնարժեքն անընդհատ իջեցնող, բարձրորակ արտադրանք տվող ձեռնարկություն է։*

*4. Բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների որակավորումը, արտադրության կուլտուրայի անընդհատ բարձրացումը՝ ձեռնարկության կոլեկտիվ ստախանովյան աշխատանքի կազմակերպման անհրաժեշտ նախադրյալներն են։*

5. Ինժեներա-տեխնիկական պերսոնալի և ստախանովականների ընկերական համագործակցությունը, արտադրության նորարարների փորձի լայնորեն մասսայականացումը, գյուղատնտեսության և ռացիոնալիզատորության զարգացումը ստախանովյան շարժման կարևորագույն պայմանն է։

6. Ի՞նչ է հարկավոր մեզ անել, որ մեր ձեռնարկությունը, ցեխը, բրիգադան դառնա ստախանովյան։


## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մրցակցության կազմակերպումը։ *Ընտիր երկեր երկու հատորում։ Հայպետհրատ, 1948թ. էջ 339—342։*

Ի. Վ. Ստալին.— Ճառ՝ արտասանած ստախանովականների համամիութենական առաջին խորհրդակցությանը։ *Լենինիզմի հարցերը, 11-րդ հրատարակություն, էջ 602—616։*

Նորարարների փորձը բոլոր բանվորներին։ *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1950 թ. սեպտեմբերի 6-ի համարում։*

Ի պատիվ ստախանովյան շարժման 15-ամյակի։ *«Ս. Հ.»-ի 1950 թ. օգոստոսի 31-ի համարի 1-ին էջը։*




# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս է տեսել.

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Պրոլետարների դասակարգը և պրոլետարների պարտիան։ *1950 թ., տիրաժ 6.000։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Համառուսակի պարտիական տարաձայնությունների մասին։ *1950 թ., տիրաժ 10.000, 48 էջ։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ինչպե՞ս է հասկանում սոցիալ-դեմոկրատիան ազգային հարցը։ *1950 թ., տիրաժ 8,000, 26 էջ.։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ազգային հարցը և լենինիզմը։ *1950 թ., տիրաժ 13.000, 25 էջ։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Հոկտեմբերյան ռևոլյուցիան և ռուսական կոմունիստների տակտիկան։ *1950 թ., տիրաժ 10.000, 47 էջ։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության տնտեսական դրության և պարտիայի քաղաքականության մասին։ *1950 թ., տիրաժ 12.000, 36 էջ։*




Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ